


1917 №6 — Փետրուար 12 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ

Լոյս է տեսնում կիրակի օրերը

10 կոպէկ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման, տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ**՝ Թիֆլիս, Արասաբագեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflis, Rédaction du journal „Hambavaber".




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կ. Հ. Բ. Ընկերութեան Խորհուրդը յայտնում է ի գիտութիւն մեծարգոյ անդամների, որ շաբաթ, 18-ին փետրուարի, երեկոյեան ժամը 7-ին Ընկերութեան ընթերցարանի դահլիճում կայանալու է Ընկերութեան տարեկան ընդհանուր ժողովը։

Զբաղմունքի առարկաներն են՝

1. Կենտրոնի և ճիւղերի 1917 թուականի նախահաշիւների քննութիւնն ու վաւերացումը։
2. Զեկուցում Մ. Անանեանի և Ս. Մելքումեանի նուիրաբերութիւնների մասին։
3. Ս. Տէր-Առաքելեանի, Հ. Միրիմանեանի, Կարամուրզեանի և Մելքումեանի նուիրած գումարների գործադրութիւնը։
4. Ընկերութեան հիւանդանոցը։
5. Հ. Կենտրոն. Կոմիտէի գործունէութիւնը։
6. Զեկուցում պարենաւորման գործի։
7. Գլխաւոր Կոմիտէի զեկուցումը գաղթականական արհեստանոցների մասին։

Ժողովից առաջ կատարուելու է հանգ. բարերար Արգար Անանեանի հոգեհանգիստը։

# ՀՈՂԸ ՈՅԺ Է

*Անդրկովկասի հողատիրութեան վիճակագրական տեղեկութիւնները հայ ժողովրդի դրութիւնը ներկայացնում են շատ անմխիթար։*

*Այդ տեղեկութիւններից ստացւում է վերին աստիճանի յուսահատական ու տխուր պատկեր։*

*Ցաւալի է, բայց պէտք խոստովանել, որ վիճակագրութեան տւեալները չեն հակասում, այլ կատարելապէս համապատասխանում են հենց ամեն մէկիս ծանօթ շրջանի իրականութեան։*

*Ում չէ յայտնի, թէ ինչ ողորմելի վիճակի մէջ է հայ հողագործը։*

*Ճիշտ է, հայ ազգաբնակութիւնը բաղկացած է իր ահագին մեծամասնութեամբ հողագործ գիւղացութիւնից, բայց նա դժբաղդաբար հողազուրկ ժողովուրդ է․ նա ապրում է գլխաւորապէս արքունական հողերի վրայ, մշակում է այդ հողերը և ապրում է այդ հողերից ստացուած չափազանց համեստ արդիւնքով, լրացնելով իր պակասը կողմնակի միջոցներով․ նա տէր ու տնօրէն չէ իր ձեռքի տակ ունեցած հողի․ նրա իրաւունքները սահմանափակ են և այդ պատճառաւ չի կարող օգտուել այն բոլոր արտօնութիւններով, ինչպէս իսկական տէրը։*

*Սեփական հողատէր հայերը՝ համեմատած մեր հարևան ազգերի հետ, այնքան չնչին տոկոս են կազմում թէ թւով և թէ կալուածքներով, որ նրանք ընդհանուր հողատէրերի մէջ, կարծես, հալւում, ձուլւում են ու աննկատելի դառնում։*

*Ցաւը այն չէ, որ մենք հայ հողային սեփականատէր անհատներ քիչ ունենք․ գուցէ հենց աւելի լաւ է, որ ոչ թէ անհատներ, այլ համայնքներ լինեն հողատէրեր, ցաւը գլխաւորապէս այն է, որ հայ ժողովրդի ունեցած հողերը անբերրի են, ընկած լինելով մեծ մասամբ բարձրավանդակներում․ քիչ են այդ հողերը իրենց քանակութեամբ, համեմատած ժողովրդի թւի հետ, ուր կարելի է միայն ցորեն, գարի ցանել և իբր արօտատեղեր օգտուել։ Այդ հողերն անպէտք են բարձր գիւղատնտեսական կուլտուրայի համար, այդ հողերի մշակելը խեղճ հողագործի համար տաժանակիր աշխատանք է։*

*Քանի որ մեր գիւղացութիւնը այս դրութեան է, զարմանալի չէ, որ գաւառներից լսւում են սովալուկ գիւղացութեան ճիչեր․ շատ բնական է, որ մամուլը անդադար ահազանգ է հնչեցնում այդ գիւղացութեան ողբալի վիճակի մասին․ դառն քաղցածութեան հետևանք է, երբ մարդիկ դիմում են անտառները, դաշտերը՝ որոնելու արմատներ, չորացած վայրենի պտուղներ, որպէս զի յագեցնեն իրենց քաղցը։*

*Չենք կարող պնդել, թէ հայ գիւղացու դրութիւնը ծանրացաւ հենց վերջին տարիները կամ պատերազմի պատճառաւ։ Անհերքելի իրողութիւն է, որ հայ գիւղացուն իրա հողից ստացուած բերքը մեծ մասամբ բաւականացնում է միայն մինչև ձմեռուայ ամիսները, կամ մինչև գարնան սկիզբները, այնուհետև նա ապրում է հացը գնելով, հայթայթելով միջոցներ մշակութեամբ կամ այլ կողմնակի աշխատանքներով։*

*Միակ պատճառը, ինչպէս ասացինք, հողի պակասութիւնն է և հողի անբերրիութիւնը։*

*Ապագան սպառնում է աւելի մեծ վտանգներ, որովհետև եղած հողն էլ ուժասպառ է լինում։*

*Ահա թէ որքան դառն է հայ գիւղացութեան վիճակը հողի կողմից։*

*Հողային հարցը ոչ պակաս սուր կերպարանք է ստացել և մնացեալ հայկական տարրերի համար՝ հասարակական իրաւունքների տեսակէտից։*

*Փոխարքայի նախաձեռնութեամբ մշակուեց Կովկասում զեմստւօ մտցնելու նախագիծ, իսկ հեռագրերը մօտ օրերս հաղորդեցին, որ Պետրոգրադում նախագիծը քննւում է սենատոր Միլիւտինի նախագահութեամբ առանձին յանձնաժողովում, որը բաղկացած է նախարարութիւնների ներկայացուցիչներից։*

*Այդ քննութիւնից յետոյ նախագիծը կը ներկայացնեն Պետ. Դումային։*

*Ուրեմն մենք գտնւում ենք մեր երկրում զեմստւօ մտցնելու նախօրեակին։*

*Զեմստւօն ինքնըստինքեան շատ ցանկալի հիմնարկութիւն է և արժանի համակրանքի, քանի որ նրան են անցնում, իբր հասարակական հաստատութիւն, կառավարչական հիմնարկութիւններից շատ ֆունկցիաներ, քանի որ նա է լինելու տնօրինողը կրթական, առողջապահական, տնտեսական և այլ բազմաթիւ հասարակական և կուլտուրական խնդիրների, նա էլ գործադրելու է ժողովուրդից ստացած այդ նպատակների համար գումարները, տուրքերը։*

*Բայց բաւական չէ գաղափարի միայն գեղեցկութիւնը, կարևոր է և այն, թէ նա ինչպէս է իրականանալու կեանքի մէջ։*

*Թողնելով հարցի տեսական կողմը ու անցնելով կոնկրետ կերպով կովկասեան զեմստւոյին, հարց է ծագում, թէ ինչ մխիթարական սպասելիք ունի հայը զեմստւոյից։ Զեմստւոյում մասնակցելու և իրական դեր կատարելու համար պահանջւում է կայքի ցենզ, գլխաւորապէս հողային ցենզ։ Այդ տեսակէտից ոչ թէ միայն այնպիսի նահանգներում, ինչպէս են Գանձակինը, Բագուինը, Կարսինը և Թիֆլիսինը, այլ և հայաշատ Երևանի նահանգում էլ, բացի Ալէքսանդրապոլից և մի երկու ուրիշ գաւառներից, հայերս մեր ձայներով չենք կարող ներկայացուցիչներ ընտրել։*

*Ահա և ձեզ պերճախօս փաստեր հենց Երևանի նահանգի վերաբերութեամբ։ Երևանի գաւառում հայերը կարող են ունենալ 154 ընտրողներ, իսկ թուրքերը 159.*

Նախիջևանի գաւառում հայ ընտրողների թիւը կարող է հասնել 221-ի, Սուրմալուի գաւառում հայերի ձայները 92-ի, իսկ թուքերինը 106-ի. Նախիջևան քաղաքում հայերը կարող են ունենալ 137 ընտրողական ձայն, թուրքերը 240. Օրդուբաթ՝ հայերը 14, թուրքերը 85 ընտրող։

Ի հարկէ ձայների այս տեսակ դասաւորման մէջ դեր է կատարել և այն հանգամաքը, որ մեր այժմեան վարչական սահմանները չեն հիմնած ոչ ազգաբնակութեան կոչման եւ ոչ էլ կուլտուրական տեսակէտով։ Եթէ այդ սկզբունքները ի նկատի առնելով նահանգների սահմանները որոշ փոփոխութիւնների ենթարկուէին, իրաւական կողմից ուրիշ նպաստաւոր պատկեր կը ստացուէր. իսկ տնտեսական կողմից, ի հարկէ, դրութիւնը կը մնար անփոփոխ։

Այդ չէ արուած և մենք ստիպուած ենք առայժմ ի նկատի առնել իրողութիւնը, որի հիման վրայ պէտք է ասել, որ հայի դրութիւնը միանգամայն ծանր է, հայ գիւղացութիւնը մնալու է քաղցած, հայ ժողովուրդը իրաւազուրկ, շնորհիւ հողի պակասութեան ու հողային ցէնզի բացակայութեան։

Մինչև օրս ձեռք առնուած միջոցները գիւղացութեան նիւթական օգնութիւն հասցնելու համար պէտք է համարել մի ամոք (պալիատիւ), սուր վայրկեանի ազդեցութեան տակ կատարուած։ Իրաւ, այդ ևս հարկաւոր է, բայց ցաւը պէտք է բժշկել արմատից։ Հայը պէտք է ծրգտի ունենալ հող եւ բաւարար չափով. հողն է լինելու կրթութեան հետ զուգընթացաբար հայի փրկողը եւ լաւագոյն ապագայ ստեղծողը։

Հրամայողական պահանջ պէտք է դառնայ ամեն մի գիտակից և շատ ու քիչ ունևոր հայի համար ձեռք բերել հող, որը, բացի յիշեալ առաւելութիւններից, ապագայ սերնդների համար էլ կը դառնայ ազնուացնող պարապմունքի առարկայ։

Իսկ հայ գիւղացութեանը այդ նպատակի համար օգնութեան պէտք է հասնեն մեր դրամատէրերը, որոնք թէ անհատական և թէ ընկերակցութեամբ կարող են հողեր գնել ու տալ գիւղացի համայնքներին՝ որոշ տարիների ընթացքում գինը յետ ստանալու պայմանով։

Մեր ներքին ու տնտեսական կեանքում հողային խնդիրը պէտք է համարենք խոշոր հասարակական խնդիր և դիմենք այդ խնդրի լուծման մեծ եռանդով։

Ժամանակ է յետ նայել և զգալ, թէ անցեալում մենք հայերս, որքան սխալ ընթացքով ենք տարել մեր տնտեսական կեանքը։

Թող գէթ այժմ գիտակցի գիւղացին, քաղաքացին, մտաւորականը, վաճառականը և արդիւնաբերողը, որ ապագան պատկանում է նրան, ով կունենայ հող, մանաւանդ եթէ ցանկանում ենք պահպանել մեր ազգութիւնը։

Հողն է տալիս եւ ույժ, եւ իրաւունք, եւ ապրելու հաստատուն աղբիւր։

Ս. Ցարութիւնեանց

## ՀԱՄԲԱՒԱԲԵՐԻ ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՄԱՐ

1) Բագուից Նիկիտա Արտ. Ադամեանից 100 ռ. 25 օրինակի գին։

2) Ալէքսանդր Ցոմ. Միրիմանեանից 8 ռ. 2 օրինակի վճար։

---

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄ

### ԼՈՒՐԵՐ

—Ռուսաց արեւմտեան ճակատ.—Շաբաթուայ ընթացքում կարևոր փոփոխութիւններ չեն եղած, հակառակորդի յարձակումները միշտ էլ յետ են մղուած, ինչպէս և Սլաւենտինի շրջանում գերմանացիների փետրուարի 9-ին կատարած յարձակումը։

—Միջագետք.—Անգլիացիները յարձակուել են Սաննայատի դիրքերի վրայ և գրաւել հակառակորդի ամրութիւնների երկու գիծը։ Թիւրքական հակայարձակումով անգլիացիները քշուել են իրենց նախկին գիծը։ Անգլիացիները դարձեալ առաջացել են Շումրանից արեւմուտք,

—Արեւմտեան ճակատ.—Այս ճակատի վրայ շաբաթուայ ընթացքում եռուն կռիւներ են տեղի ունեցել։ Անգլիացիները կամաց-կամաց յառաջանում են գրաւելով գերմանական ուժեղ կերպով ամրացրած խրամատները։

—Փետրուար 3—6 ընկղմուել են անգլիական և չէզոք երկրների 14 շոգենաւեր և առագաստանաւեր։

—Նոր նախահաշուով անգլիական նաւատորմղի նաւաստիների կազմը լինելու է 400,000 հոգի։

—Գերմանական իշխանութիւնները գրաւուած վայրերից Գերմանիա են ուղարկել 18—45 տարեկան տղամարդկանց։

---

# Ներքին տեսութիւն

---

## ՀԱՅ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՆՑ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՐԵՒԱՆՈՒՄ

Կ. Հ. Բ. Ը.-թեան Խորհուրդը, Կենտրոնական Կոմիտէն, «Նպաստամատոյց» ը.-թիւնը, Հայաստանի Վերաշինութեան Ցանձնաժողովը, Հայոց Գիւղատ. ը.-թիւնը և Էջմիածնի Եղբայրական Օգնութ., յանձն առնելով համագումարի կազմակերպման հոգսը, դեռ անցեալ յունուար ամսին առանձին գրութեամբ դիմել էր Օգոստափառ Փոխարքային, առաջարկելով ցուցակ համագումարին մասնակցողների և ապա զբաղմունքի առարկաների ցանկը՝ ամփոփուած 8 կէտերում։

Փոխարքայի դիւանատնից ստացուեց պատասխան, որ յայտնում է, թէ համագումարը Փոխարքայի կողմից թոյլատրւում է գումարել հետեւեալ նկատումներով.

1. Համագումարին մասնակից կարող են լինել այն մարմինների ներկայացուցիչները, որոնք ունեն որև է կանոնադրութիւն՝ իշխանութեան կողմից ճանաչուած։ Բացառութիւն կարող են կազմել Կովկասեան սահմանում գործող կոմիտէներից Նորին Սրբութեան Ամենայն Հայոց Կաթողիկոսի հովանաւորութեան տակ գործող «Եղբայրական Օգնութիւնը» և Հայկ. Կենտր. Կոմիտէն, որը կից է Կ. Հ. Բ. Ընկերութեան։

Ինչ վերաբերում է Ռոստովի, Նախիջևանի, Ղուբայի և Թերեքեան շրջանների, Ստաւրապոլի նահանգի, Ղրիմի և [illegible]

ծովի ծովափի մարմինների, որովհետեւ պարզ չէ, թէ որ մարմիններն են մասնակից լինելու խորհրդակցութեան, այդ պատճառով ցանկից դուրս են հանուած եւ չեն մասնակցելու։

Արեւմտահայ մարմինների ներկայացուցիչների մասնակցութիւնը համագումարում չի կարող յարգուել, բայց որոշ հարցերի պարզաբանութեան համար նիստերին կարող են մասնակցել 5 տաճկահայ։

Համագումարի զբաղմունքի առարկաներից դուրս է մնում— ա. Հայ մարմիններից կենտրոնական մարմնի անդամների ընտրութիւնը եւ բ. կամաւոր տուրքի կանոնադրութեան մշակումը հայերի մէջ, յօգուտ պատերազմից վնասուածների։

Կանոնադրութեան մշակման համար առաջարկւում է կազմել նախագիծ, որով հնարաւոր լինի հայ գաղթ. մարմինների միացումը—կենտրոնական մարմին կազմելու համար, եթէ այդ ցանկալի համարուի կառավարութեան կողմից։

Ի նկատի ունենալով եւ այն հանգամանքը, որ համագումարին Փոխարքայի կողմից մասնակից է լինելու առանձին ներկայացուցիչ, ինչպէս եւ այլ կառավարչական եւ հասարակական հաստատութեանց ներկայացուցիչներ, այդ պատճառով Փոխարքան որոշել է համագումարի նիստերին խօսել ռուսերէն. իսկ որոնք չգիտեն ռուսերէն, կարող են արտայայտուել հայերէն, պայմանով, որ անմիջապէս թարգմանուի ռուսերէն։

Համագումարի արձանագրութիւնները լինելու են ռուսերէն զուգընթաց հայերէն բնագրի։

---

## ԱՊԱՐԱՆՈՒ ՇՐՋԱՆԸ ԵՒ ԻՒՐ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՎԻՃԱԿԸ

Ապարանը մայիսին մի հիանալի բուրաստան է. կլիման բարեխառն, երեւելի է իր պաղնորակ եւ կաթնորակ ջրերով եւ աղբիւրներով. մէկ կողմէն Արագածի լեռան գով զեփիւռը եւ հիւսիս արեւելեան կողմից անտառախիտ լեռնակոյտերի շնորհիւ օդը, ջուրը եւ բուսականութիւնը մի եդեմական դրախտ կը պատկերացնէ ականատեսի վրայ։ Ժողովուրդը շատ առողջ է, սակայն կուլտուրապէս ծայրապէս յետ մնացած. գրեթէ 90% անգրագէտ։ Ծխական դպրոց գոյութիւն չի ունեցել։ Միայն շրջանիս գիւղերից ամենայայտնին՝ Բաշաբարանը, ունի պետական ուսումնարան. ուսանում են իւր եւ շրջակայքի երեխայքը։ Ապարանի հողը պարարտ եւ պտղաբեր է, սակայն տարաբաղդաբար, այս չորս տարուայ ընթացքում, ի բաց առեալ մի քանի գիւղեր, հնձոց ժամանակ կարկտախառն տեղատարափ փճացնում է հացահատիկների 80%։ Այնպէս որ այսօր ժողովուրդը իւր տան աշխատաւոր բազուկներից զրկուած ու կարկտէն կրած վնասներէն այժմ շշմած, յուսահատ վիճակի մէջ է. սովի ուրուականը դամոկլեան սրի պէս կախուած է սոյն շրջանի, մանաւանդ Ղարանլուխ եւ Հաճի-Բաղէր գիւղերի հայ ազգաբնակութեան գլխին։ Ռազմադաշտ գնացող հարազատների դիրքը լաւ, անտանոց համաճարակը լաւ թէ տան համայնքի սովալլուկ եւ մերկանդամ պառաւների եւ երեխաների ցաւը հազայ ու արտասուքը սրբէ։ Հաստատ կարող եմ ասել, որ վերոյիշեալ գիւղերի ունեցած հացի պաշարը կարող է բաւարարել մինչեւ մարտ ամիսը, իսկ այնուհետեւ սպառնում է համատարած սովը։

Սոյն շրջանի գիւղերում ա..րող գաղթականութեան խիստ ճգնաժամ է սպառնում, առաւել. կան թանկութիւն է, մի պուդ ցորենը 8-9 ռ., գարունը 6-7 ռ., նաւթի փութը 20-25 կ., իւղը 2 ռ., սապոնը 70-75 կ., իսկ շաքար բնաւ չի ճարւում։

Գաղթական տղամարդիկ 15-30 տարեկանը աշխատաւոր են, իսկ մնացողը «Եղբ. Օգնութեան» մինչեւ 1916 թ. սեպ. նպաստը կը ստանային 6 ռ., իսկ այժմ նպաստի կէսը աշխատող ունեցողը միջանկեալ կըպահէ իւր ընտանիքը. սակայն թշուառ որբեւայրիները, որ շատ շատ են, այս թանկութեան ինչպէս ապրեն։ Դրամական օժանդակութիւնից զատ, 1916 թ. յունուարի 8-10 ին Ալիքուջակ գիւղում բաշխած են 10-15 ի եղող ընտանեաց $3\frac{1}{2}$ փ. շաքար, 2-3 փ. բրինձ, երկուական վերմակ եւ մի քուրք մորթէ. իսկ շատերին մի մի հնամաշ վերարկու վրանին տեսնելով չեն տուել։

2) 1916 թ. մայիսին բաշխուել է նորէն Ալիքուջակ գիւղում հագուստեղէն մեր շահախնդիր Ինկլիս Պօղոսեան Նազարեթի եւ մի քանի արբանեակների ձեռքով, 10-15 անձանց մի պէնճաք, 3-4 փոքր երեխայոց պլուզ եւ այսպիսի շահախնդիր անձանց էջմիածնի «Եղբ. Օգնութիւնը» պէտք է հեռացնէ, եւ հրաւիրէ աւելի բարեխիղճ եւ գաղթ. վիճակին աւելի հոգատար մարդիկ։

Բաշ-Ապարան գիւղը, Արագածի ստորոտում կիսահարթ դաշտի վրայ, ունի 350-400 տուն բնակիչ, 60 տուն էլ գաղթ. մեծագոյն մաս Ռոնջուրցի (Պուլանըգ). իր բերքը՝ խոտը շատ առատ է. գիւղի քովից կանցնի Գարա-սու (սեւ ջուր) կոչուած գետակը, որ կը կազմուի Արագածի եւ Սպիտակ լեռներից բղխած ջուրերից։

Տաճկահայ գաղթականները ունին երկու ուսումնարան. իսկ տեղացիներ ծխական դպրոց չունին, այլ միայն պետական չորս բաժանմունքէ բաղկացեալ ուսումնարան, ուր կուսանին Ղարանլուխի, Հաճի-Բաղէրի եւ Մուլքի գիւղերի երեխայքը։

1. *Ղարանլուխ*.—$\frac{3}{4}$ ժամ հեռու Արագածէն, շինուած է անտառապատ հովտի մէջ, կլիման բարեխառն է. հիանալի է նամանաւանդ իբրեւ ամարանոց. ունի հրաշալի, վճիտ աղբիւրներ. հողի կէս մասը անտառապատ եւ լեռնոտ է, հանդը եւ ցանքսը շատ սակաւ, դիրքը լեռնային է այս չորս տարի անընդհատ հընձոց առեն կարկուտը վնասում է հացահատիկները։

2. *Հաճի-Բաղէր*.—Ունի 90-100 բնիկ, եւ գաղթ. 8—10 տուն. բերքը սակաւ, չունեն ցանելու տեղ. եղածը կուտը կը կտորէ. այս քանի տարի տէրութեան տուած ողորմութիւնով է որ ապրում են։

3. *Միլքի*.—Ունի 250—300 բնիկ եւ 27 տուն գաղթական, բերքը լաւ է, Ալագեազը իրենց ամարանոց է, չունին ուսումնարան. թէ տեղացիները եւ թէ գաղթական երեխայք գնում են Բաշ-Ապարան ուսանելու։

5. *Գիլլիջա*.—Կը բաղկանայ մօտաւորապէս 350 տունէ. բերքը շատ լաւ է, ունի իր ամարանոցը. ջուրը շատ, արօտատեղը լաւ. ունի 15—18 տուն գաղթական. զուրկ դպրոցից։

6. *Ալիքուջակ*.—Դուրանի վրայ շինած. ունի 400 տուն եւ 17 գաղթ., բերքը շատ լաւ է. այդտեղ կայ մի դեղատուն գաղթ. համար, սակայն գաղթականները սիրով չեն դիմում, քանի որ դժուարութիւններ են յարուցանւում վարիչների կողմից։

1916 թ. բացուաւ այդ գիւղում սպառողական խանութ. բայց պարագլուխները շահախնդիր մարդիկ են. խանութին մէջ ամեն մի մթերք կար. սակայն գաղթ. օգտուած, երբէք։

7. *Զամոտլու*.—Բաղկանում է 250 բնիկ եւ 21 տուն գաղթականութենէ. իր դիրքը տափարակ է, արժանի է իւր անուան (չամոռ, տղմոտ, ցեխոտ) բերքը շատ լաւ է։ Գաղթ. ունին դպրոց, իսկ տեղացիները ոչ. ապրուստները միջակ է։

8. *Սամաղաբլի*.--Գիւղը լեռնատակ, ունի 95—100 տուն եւ եւ 15 տուն գաղթ. բերք չունի, որովհետեւ ցանելու հողի $\frac{3}{4}$ մասը քարոտ է, այդ պատճառաւ ժողովուրդը ամեն տարի հաց կը մուրայ. չունի դպրոց։

9. *Իմըրլու*.— Իր մակերեւոյթը կիսահարթ. ունի լաւ հանքային ջրեր եւ լաւ ամարանոց. բերքը լաւ է, բաղկանում է 130-150 եւ 8—10 տունից գաղթ. չունին դպրոց։

10. *Գուլաբըլու*.—Լեռնահովիտին մէջ շինուած, անտառի շնորհիւ օդը եւ բուսականութիւնը լաւ է. ունի մի լաւ ամարա-

նոց ծաղկաձորի լեռների լանջերին, ունի 120—30 և 5—6 տուն գաղթական։

11. Թալառլու.—Արագածի ստորոտին. քարոտ, անբերրի մի գիւղ է, իսկ արօտատեղը լաւ է, ունի 120 տուն բնիկ, 12 տուն գաղթական. խիստ անմխիթարական վիճակում են. չունին ուսումնարան։

## ԳԱՒԱՌ

Ախալցխա, 29 դեկտ. 1916 թ.—Քաղաքիս արական գիմնազիայի բացումից յետոյ անմիջապէս պահանջ և գրաւման առարկայ էր դարձել ունենալու և իգական գիմնազիա։ Սակայն դրա համար հարկաւոր դրամական միջոցներըչը լինելու պատճառով մինչև այսօր էլ այդ ցանկութիւնը մնացել էր անիրագործելի։ Անցեալները Կովկասի ուսումն. շրջանի հոգաբարձու պ. Ռուդոլֆ առաջարկել էր թոյլատրել Ախալցխայում իգական գիմնազիա բաց անելու, եթէ քաղաքը կարողանայ նրա շինութիւնը ձեռք բերել։ Ահա այդ հարցն էր, որ հասարակութեան գրաւման խնդիր էր դարձել։ Ախալցխայի նոր գաւառապետ՝ բարոն. Ա. Գուտիեվը այս ամառ քաղաքս գալով և զգալով այդ գիմնազիայի կարիքը մեզանում, սկսեց աշխատել գլուխ բերելու։ Վերջապէս անցեալ ամսի վերջերին քաղաքումս լուր տարածուեց, որ քաղաքիս յայտնի կալուածատէր՝ Կարապետ Բայբուրդցեանը մտադիր է քաղաքիս Նիկոլայեսկայա և Դիւանեօլսկայա փողոցների անկիւնում և նրա կողքին ունեցած իւր սեփական երկու տները ընծայել քաղաքին, իգական գիմնազիայի շինութեան յատկացնելու համար։ Բարեբաղդաբար այս լուրը ճշդուեց և ամսիս 14-ին կայացած իրաւասուների ժողովում, քաղաքային պ. Աւագը կարդաց յիշեալ Կարապետ Բայբուրդցեանի գրաւոր յայտարարութիւնը, որով յիշեալ երկու տները նուիրում է օրիորդաց գիմնազիայի շինութեան յատկացնելու համար, միայն այն պայմանով, որ քաղաքը յիշեալ գիմնազիայում պահէ 7 հոգի խեղճ աշակերտուհիներ, տալով նոցա թօշակադրամները։

Իրաւասուների ժողովը լսելով Բայբուրդցեանի այս ուրախալի յայտարարութիւնը, նախ ոտքի կանգնելով յայտնում է շնորհակալութիւն այդ ժողովին ներկայ եղող պ. գաւառապետին, այս ցանկալի գործի յաջողութեան համար իւր գործ դրած բեղմնաւոր մասնակցութեան համար, որի շնորհիւ յաջողուել էր պ. Բայբուրդցեանի այդ նուէրը։ Ապա ժողովը իրանցից ընտրեց մի յանձնաժողով ներկայանալու նուիրատու պ. Կ. Բայբուրդցեանին և քաղաքի կողմից մի շնորհակալական ուղերձ (адресъ) ներկայացնելու այդ նուէրի առթիւ, իսկ նրա պատկերը ապագայում կախել իգական գիմնազիայի դահլիճում։ Նուիրուած շինութիւնները բաւականին մեծ են և առայժմ բաւականացնում են գիմնազիային։ Իրաւասուների այս ժողովը որոշեց անմիջապէս դիմել ուր անկ է այդ գիմնազիայի բացման թոյլտւութիւնը ստանալու համար, որը բացուելու է առաջիկայ ուսումն. տարուանից։ Թոյլտւութիւն ստանալուց յետոյ դիմելու են Կովկասի Փոխարքայի ամուսնուն՝ իշխանուհի Անաստասիա Նիկոլաեւնային, իւր համաձայնութիւնը տալու, այդ գիմնազիան իւր անունով կոչուելու համար։ Այդ գիմնազիան լինելու է 7 դասարանից և երկու տարրական բաժանմունքից բաղկացած։

Իրաւասուների նոյն ժողովում ընտրուեց պ. գաւառապետի նախագահութեամբ մի յանձնաժողով, գիմնազիայի բացման նախապատրաստութիւնների և բնակարանի կահաւորութիւնների համար քաղաքումս նուէրներ հաւաքելու համար։ Յանձնաժողովի անդամներ ընտրուեցին, բացի գաւառապետից, քաղաքային աւագը՝ Դր. Մովսիսեան, նոտար Դր. Բուդաղեան, Սեղբ. Վերաբեան և Կարապետ Մարուքեան։ Այս օրերս թէ գաւառապետը եթէ աւագը գնալու են Թիֆլիս այդ գիմնազիայի բացման թոյլտւութիւնը ստանալու համար։ Արդէն քաղաքումս տպագրուած յայտարարութիւններ են ցրուած, որով յայտնում են, որ գիմնազիայում սովորել ցանկացող օրիորդները ցուցակագրուեն։ Այսպիսով քաղաքիս այդ իգական գիմնազիայի բացման խնդիրը արդէն իրականանալու շաւղի մէջ մտաւ։

Թ.

---

Տրապիզոն.—Բացուել է Կ. Հ. Բ. Ը.թեան ճիւղ և տեղական Հայկ. Կոմիտէն վերսկսել է իւր ընդհատուած գործունէութիւնը։

Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղը պիտի զբաղուի Տրապիզոնի մէջ վերապրողների հոգատարութեամբ և վարի նաև Բաբերդի, Գիւմիւշխանէի և Ծովափնեայ շրջանների հայութեան ուտեստի, հագուստի և այլ կենսական կարիքների մատակարարութեան գործով։

Ճիւղն առայժմ ունի 100-ից աւելի անդամ։

Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղը որոշել է տալ մի ներկայացում-համերգ, որի ամբողջ հոգատարութիւնը ստանձնում է հայազգի գնդապետ Ալ. Մելիք-Փարսադանեանը։ Սորա աջակցութեան շնորհիւ շուտով աւարտուելու է Տրապիզոնի հոյակապ ու փառաւոր եկեղեցու շինութեան թերի մնացած մասը։

Տեղումս է Իտալիայում կրթութիւն ստացած ու հրաշալի ձայն ունեցող մի հայ զինուոր, որը և պատրաստում է քառաձայն խումբ եկեղեցու համար։

Հայկ. Նորակազմ կոմիտէն զբաղուած է մի կողմից իր փակուած ժամանակի գործերը կարգի բերելով, միւս կողմից հայապատկան շարժական ստացուածքները աճուրդի հանելով։

Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղը և կոմիտէն աշխատում են հաւաքելու շրջանից որբերին, բաց անելու որբանոց և դպրոցներ։

Այժմ Տրապիզոնում կան 50-ից աւելի որբեր, որոնք և խնամւում են հոգատարութեամբ։

---

Սաչխերէթ.—Անցեալ դեկտեմբեր ամսի 21-ին Քութայիսի գործակալ Յովսէփ աւ. ք. Առիւծեանը գալով Սաչխերէթ ժողով գումարեց և յայտնեց Ն. Ս. Օծութեան Վեհափառ Կաթողիկոսի հրամանը հայ եկեղեցու պաշտօնէութեան ներկայ տնտեսական ծանր կացութեան մասին, Գասպար քհնյ. Տէր-Գաբրէլեանի անտանելի դրութիւնը, նիւթականի վերաբերմամբ։ Հ. գործակալը և հասարակութիւնը ազդուելով երկու ժամուայ ընթացքում հաւաքուեց 180ռ. Գասպար քհնյ. Տէր-Գաբրիէլեանի օգտին։ Ամէն գովասանքի արժանի է գործակալ Տէր Յովսէփի ջանքերը յօգուտ եկեղեցու և դպրոցի։

—Ամսոյս 14-ին պ. հոգաբարձու Գրիգոր Տինտալիգեանի երեխայի մկրտութեան ճաշին հաւաքուեց 17 ռ. 77 կ. յօգուտ Կ. Հ. Բ. Ը-թեան Սաչխերէթի նորաբաց ճիւղին։

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ընկ.-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է պ. Մարգար Յովսէփեան Մովսէսեանից 100 ռ. մշտական անդամութեան համար։

—Սեաստոպոլից Տալիթա Բորշեանից յօգուտ Տրապիզոնի որբերի 25 ռ.։

—Միքայէլ Մեսուրնութեանից յօգուտ գաղթակ. դպրոցների 16 ռ.

—Գ. Լիազօրիտ Մելիք-Սարգսեանից յօգուտ Ծիրանաւորի որբանոցի 20 ռ.

—Իշխ. Ս. Կ. Մակաևից հանգ. Է. Մ. Օգանեզովի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն յօգուտ փախստականների 150 ռ.

—Առաջին մասնաւոր Լոմբարդի ծառայողներից 10 ռ. 9 կ.

—Ջանղուլեանից Тиф. Лис.-ի խմբագրութեան միջոցով 5ռ.

—Կ. Հ. Բ. Ընկ.-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Կոստանդին Վարդանեան Պօղոսեանից ի յիշատակ իւր վաղաթառամ կնոջ՝ Սոնիկի 300 ռ. յօգուտ ընկ. ճաշարանի, թաղման օրը ճաշ տալու համար։

Նոյն անձը նուիրել է յօգուտ Հին-Նախիջևանի ծխ. դպրոցի թատրոնական սրահ շինելու 5000 ռ. և նոյն տեղի հայոց դպրոցի երկու աշակ. ծախքը մինչև աւարտելը. այլև նոյն քաղաքի ռուսաց եկեղեցու և մահմեդականների մզկիթին 200-ական ռուբլի։

ՀԱՅ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Եկատերինոդարի Հայ Կանանց Կոմիտէից ստացուած 12 կապոց տաք հագուստ ուղարկուեց Կարին հայ փախստականների համար։

—

Կոմիտէի դիմումի համաձայն փախստականների գործի գլխաւոր լիազօր գեն. Թամամշեանը թոյլատրել է Կոմիտէիս որբանոցներ ունենալու Շուշում, Խանքենդում և Ցարսկիե-Կոլոգցում։

—

«Հորիզոնի» խմբագրութեան միջոցաւ ստացուեց մի արկղ տաք շորեր Ալեքսանդրապոլի Սասունցիների որբանոցի համար։

—

Խնուսից.—Լիազօր Կարօ-Սասունին հեռագրում է.—Շարունակ նորանոր գաղթականներ են գալիս. այսօր հասան 80 հոգի, անհրաժեշտ է օգնութիւն։

ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Փետրուարի 1—8-ը

Ալիւր ուղարկուած է Ղարս 4 վագոն, Ղարաքիլիսա՝ 1, Աղեքսանդրապոլ՝ 2, Քոլագերան՝ 1, Գանձակ՝ 2, Դիլիջան և Քարվանսարա 500-ական փութ, Վաղարշապատ՝ 6 վագոն, Իգդիր՝ 8, Աշտարակ՝ 4, Սարիղամիշ՝ 6, Երևան՝ 2 և Ղարանլուղ՝ 1, ընդամենը 38 վագոն։

Ցորեն ուղարկուած է Երևան 1 վագոն, Վաղարշապատ՝ 1, Իգդիր՝ 2 և Աշտարակ՝ 1, ընդամենը 5 վագոն։

Սապոն ուղարկուած է Աշտարակ 40 և շաքարաւազ 260 փութ։

ՀԵՌԱԳԻՐ

Պարենաւորման բաժանմունքին պետական միջոցներով։

Եկատերինոդար—Մելքոնեանից.

Որոշուած են ալիւրի նոր հաստատուն գներ։ Թեփ-ալիւրը 3 ռ. 9 կ., առաջին տեսակինը պարկի հետ միասին 4 ռ. 61 կ., երկրորդ տեսակին՝ 3 ռ. 59 կ., երրորդին՝ 2 ռ. 66 կ., ցորենը առանց պարկի 2 ռ. 61 կ.

Գնեցի դարձեալ 20 վագոն թեփ-ալիւր 3ռ. 50 կոպէկով, որ կը յանձնեն մինչև փետրուարի 10-ը։

Նովոռոսիյսկ—Շիշկինից

Շոգենաւ «Իմերի» բարձեց ձեզ համար Ելմուտից 5 վ. ալիւր և Դվայանայից 2։

Վան—Օհանջանեանից։

Ստացուած տեղեկութեանց համաձայն Պարսկաստանում ցորենի փութը արժէ 4 ռ.։ Տաս օրից յետոյ կը գնամ Պարսկաստան. յուսով եմ 25 հազար փութ գնելու։ Խնդրում եմ միջնորդէք հացահատիկների պարենաւորման համար յատկացնել ևս 100 հազար ռ.

—Անհրաժեշտ է շուտափոյթ հիմնել Վանում դարբնոց, հիւսնանոց, թամբագործարան և տախտակի գործարան։ Գործը կազմակերպելու համար հարկաւոր է 40,000 ռ.։

Այս հեռագրին պատասխանուած է. արհեստաւորների խնդիրը կը քննուի և հետևանքի մասին կը յայտնենք Ձեզ։ Ցանքսի խնդիրը վճռուած է գեներալ Թամամշեանի տուած միջոցներով կազմակերպել, և որ արդէն սկսուել է։

Վան—Օհանջանեանից.

—Մակուի գծի կառավարիչը հնարաւոր է համարում այդ գծով ուղարկել ամսական 10—15 վագոն ապրանք, եթէ գործը յաջող կազմակերպուի։ Հարկաւոր է, որ գեներալ Թամամշեանը միջնորդութիւն յարուցանի Զինուորական երկաթուղու վարչութեան և գեներալ Սավիցկու առաջ այդ մասին։

Պատասխանուած է. միջնորդութիւն յարուցուած է։

## Քրոնիկոն

—Թիֆլիսի հայ բժիշկները, ինչպէս հաղորդել էինք առաջ, յղացել են մի գեղեցիկ միտք. համախմբուելով կազմել Կ. Հ. Բ. Ը.-թեան կից բաժանմունք (սեկցիա) և լուրջ կերպով զբաղուել մեր ժողովուրդի, գլխաւորապէս գաւառի, առողջապահութեամբ։

Հայ բժիշկների կողմից Ընկերութեան խորհուրդը այդ հարցի մասին ստացել է գրաւոր առաջարկութիւն, որը մօտ օրերս քննուելու է Խորհրդի արտակարգ նիստում մասնակցութեամբ բժիշկների ներկայացուցիչների։

—Հայ գաղթականական կազմակերպութիւնների համագումարը կայանալու է մարտի 12-14-ին. պատգամաւորների թիւը լինելու է 65. բացի հայ կազմակերպութիւնների պատգամաւորներից լինելու են ներկայացուցիչներ Կովկասի Փոխարքայի՝ Կայսրուհու հովանաւորութեան տակ գտնուող պատերազմից վնասուածներին օգնող Կովկասի գլխաւոր Կոմիտէի և Համառուսական Քաղաքների Միութեան կողմից, և Կովկասեան ճակատի գաղթականական գործերի գլխաւոր լիազօրը կամ նրա ներկայացուցիչը։ Համագումարին մասնակցելու են նաև պետական Դումայի երեք հայ պատգամաւորները՝ պ. պ. Պապաջանեանց, Աջեմեանց և Ֆրանգուլեան (Հաշտարխանի շրջանի ներկայացուցիչը)։

—Կովկասի բուժավայրերի (կուրորտ) ընկերութեան համագումարը նշանակուած է մարտի 5-8ը նախագահութեամբ Փոխարքայի քաղաքացիական մասի օգնական իշխան Օրլովի։ Այդ համագումարին մասնակցելու են մօտ 300 անդամ. սպասւում են մայրաքաղաքների մի քանի յայտնի գիտնականներ։

Համագումարի համար պատրաստւում է և ցուցահանդէս, որը կը ներկայացնէ Կովկասեան բուժավայրերից լուսանկարներով ու նրանց յատկացեալ առարկաներով։

Համագումարին զեկուցումներ ներկայացնելու համար առայժմ ցանկութիւն են յայտնել 40 հոգի։

Զեկուցումներ լինելու են, ի միջի այլոց, Անդրկովկասի հետևեալ վայրերի՝ Բորժոմի, Աբասթումանի, Սուրամի, Դիլիջանի ու Թիֆլիսի մասին։

—Մարտի 21-ին կայանալու է Թիֆլիսում մուսուլմանների համագումարը, որի գլխաւոր առարկան լինելու է մուսուլմանների դպրոցական խնդիրներ և ի միջի այլոց հոգևոր դպրանոց հիմնելու հարցը։ Համագումարին մասնակցելու են մօտ 60 պատգամաւորներ։

—Աշտարխանի Սրբազան առաջնորդ Մեսրոպ եպիսկոպոսը յունուարի 26-ին ուղևորուել է Հաշտարխանից շրջելու իր թեմը։ Մեսրոպ եպիսկոպոսը ուշի-ուշով դիտում է ամենտեղ, թէ ինչպէս են դրուած եկեղեցական և կրթական գործերը և մեծ վայրերում կարդում է դասախօսութիւններ հայ ժողովրդի համար, իրազեկ անելով նրանց մեր հայկական իրականութեան և յորդորում է օգնութեան հասնել Թշուառ գաղթականութեան։ Սրբազանի կարդացած դասախօսութիւնից յետոյ հայ հասարակութիւնը ժողովել է 2000 ռ. գաղթականների համար։

Սամարայում Մեսրոպ եպիսկոպոսը խօսել է առաջիկայ գաղթականական համագումարի մասին։ Այնտեղից նա մեկնելու է Տաշքենդ, և այստեղից սկսած բազմաթիւ վայրեր։

—Կ. Հ. Բ. Ը-թեան ճաշարանի օգտին ամսիս 10-ին քաղաքումս տեղի ունեցաւ մի օրեայ հանգանակութիւն տուփերով։

—Ալէքսանդրապոլում մի խումբ մտաւորականներ որոշել են հիմնել Շիրակի թանգարան։

—Ամսիս 9-ին Մ. Արամեանի շէնութեան մէջ կայացաւ Ազգագրական ընկերութեան Ղարաբաղցիների ազգագրական երեկոյթ։

—Կ. Հ. Բ. Ընկ-թեան 1917 թ. նախահաշիւը տպագրուած է։ Նախահաշուով մուտք սպասւում է 152,099 ռ., նոյնքան ելք։

—Կ. Հ. Բ. Ընկեր. ընդհանուր ժողովը տեղի կունենայ փետրուարի 18-ին։

—Կարնի առման տարեդարձին քաղ. խորհուրդը իւր վերջին նիստում որոշեց 10 թոշակաւոր (զինուորականների երեխաներ) պահելու Օգոստափառ Փոխարքայ Նիկոլայ Նիկոլաեւիչի անունով. 2-ը բարձրագոյն, 2-ը միջնակարգ, իսկ 6-ը քաղաքային դպրոցում։

—Էջմիածնում պետական միջնակարգ դպրոցների համար կրօնագիտութեան ծրագիր են կազմում։ Այդ առթիւ Թիֆլիսից հեռագրով հրաւիրուել են՝ Սահակ աւ. ք. Սահակեանը, Գրիգոր աւ. ք. Երզնկեանը և Ներսիսեան դպրոցի ուսուցիչ Միսաք Խօստիկեանը։

—Հայ արուեստագէտների միութեան անդրանիկ ցուցահանդէսը բացուեց փետրուարի 5 Առաֆելեանցի տանը (Գոլովինեան պողոտայ). մասնակցում են 50-ից աւելի հայ և օտար արուեստագէտներ՝ նկարիչներ, արձանագործներ, ճարտարապետներ։ Այցելողների թիւը շատանալու պատճառով երկարացրած է ցուցահանդէսի բացման ժամանակը։

# Արտաքին տեսութիւն

## ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

### ԱՆՕՐԻՆԱԿ ԱՄԵՐԻԿԱՑԻՆ

Պատմութիւն չէ, այլ իրականութիւն։

Այդ իրողութիւնը, աւելի շուտ՝ այդ փառաւոր ժեստը, պատահել է Ամերիկայում, Նիւեօրկի մէջ, Հայկական Նպաստի Ամերիկեան գրասենեակում, որի մասին պատմում է „Hew Armenia" հանդէսը։

5-րդ աւենիւյում, համար 70, ուր գտնւում է կոմիտէի գրասենեակը, մի առաւօտ ներկայացաւ մի պարոն, լաւ հագնուած բայց պարզ ու համեստ կերպարանքով և խնդրեց տեսնել քարտուղարին։

Նա յիշատակեց այն նահանգը, ուր նա բնակւում է, և յայտնեց, որ թերթերում կարդացել է, որ Թիւրքիայում հայերի դրութիւնը շատ ծանր է և շտապողական կարիք կայ դրամի։

—Ես կարող եմ 5000 դոլար նուիրել, ասաց օտարականը, բայց կուզենայի իմանալ հայ ժողովրդի մասին մի քանի իրողութիւններ ու մանրամասներ։

Կոմիտէի քարտուղար պր. Walter Mallory հակիրճ պատկերացրեց Հայաստանի դրութիւնը, յիշեց տեղահանման ողբալի տեսարանները, և վերջապէս աքսորի տխուր կարաւանը դէպի Միջագետք՝ անապատի միջից։ Նա աւելացրեց, որ ներկայումս մօտ մի միլիոն հայ փախստականներ կան Ռուսաստանում, Թիւրքիայում ու Պարսկաստանում, որոնց մեծ մասը կին ու երեխաներ, կատարեալ զրկանքի մէջ, ուտեստից ու հագուստից զուրկ։

Յետոյ պ. Մալլորի խօսեց նպաստի կոմիտէին նուիրատուների արած զոհաբերութիւնների մասին։

Այցելուին պատմեցին պատմութիւնը այն աւագերէցի, որ իր կնոջ հետ միասին ստացած 80 դոլար ռոճիկի կէսը 6 ամիս շարունակ տալու է հայանպաստ կոմիտէին։

—Շատ լաւ, ասաց օտարականը, եթէ նրանք կարող են անել այդպիսի զոհողութիւն, ինձ թւում է, որ ես կարող եմ 10,000 դոլար տալ։

Գանձապահի գրասենեակը գնալիս նրան պատմեցին նաև, որ մի պառաւ կին գրում է, որ տալու դրամ չունենալով, այսու ամենայնիւ ցանկացել է նուիրաբերել իր տան կահաւորումից մի կտոր, որ պատկանում էր իր մօրը։ Նրան կարդացին նաև մի նամակ, որը գրել էր մի աղքատ փոքր աղջկայ մայրը, որ երկու սենտ էր շահել փողոց աւլելով։ Նա ցանկանում էր այդ 2 սենտից մէկը նուիրել բելգիացի երեխաներին և մի սենտը հայ որբիկներին։

—Շատ լաւ, ասաց այցելուն, եթէ մարդիկ իրենց կարասիքն են տալիս, նշանակում է ամեն մարդ պիտի օգնէ փրկելու այդ քրիստոնեայ ժողովուրդը։ Ինձ թւում է, որ ես կարող եմ 15,000 դոլար նուիրել։

Բայց նախքան գանձապահի գրասենեակը մտնելը, օտարականը, թւում էր, մտքումը հաշիւներ էր անում, և երբ նա գրեց իր չէքը, երևաց որ 18,000 դոլլար, (55,000 ռ.) է նուիրում։

Կարդացի՞ք, հայ հարուստներ. եթէ այո, դէհ այժմ էլ մի քիչ մտածեցէք և սիրտ առէք ու սիրտ արէք և դուք։

---

## ԲՈՒԼԱՆԸՂԻ ԿՈՏՈՐԱԾԸ *)

### I

### ՄՈԼԼԱ-ՔԵՆԴ

Լիզ նահյիեէից (գիւղախումբ) 10 վերստ հեռու, հարաւ-արեելան կողմը, փոքրիկ ձորակի մը մէջ ընկած է վերոյիշեալ գիւղը, որու նախկին անունն է Դէրէքէնտ (Ձորագիւղ) իւր բնական դիրքին պատճառաւ։ Սակայն վաղ ժամանակ, տաճիկ կառավարութեան արտօնութեամբ, այդ գիւղին տիրապետել են քիւրդ ազդեցիկ շէխեր և մոլլաներ՝ իրենց ձեռքն ունեցած «Կայսերական կալուածաթղթով (էվգաֆի հիւմայիւն գոչանի), որով գիւղի անունը դրել են Մոնլա-քենտ, որ է մոլլայի գիւղ։ Նման էվգաֆի գոչաններով, Տաճկաստանում տիրապետուած գիւղեր՝ շեխերու, քիւրդ ցեղապետներու (թոռնիկր) կողմէ, շատ կան, որոնց տէրերը իրենց ազդեցութեամբ և զանազան կեղծ ու պատիր ձեւերով տիրապետելով՝ իւրացնում էին սեփականացրած գիւղերու ամբողջ հասոյթները՝ տալով կառավարութեան «Սեղանէն աւելացած փշրանքները միայն...»։

Ահա այդ կարգի գիւղերէն մինն էր Մոլլա-քենտը, որ 90-ական թուականներին ունէր 100-տուն զուտ հայ ազգաբնակչութիւն։

*) Տես «Համբաւաբեր» № 48, 1916 թ.։

*Այդ թուականներին տիրող հայահալած քաղաքականութեան շնորհիւ Մոլլաքենտցիները, ուրիշ գիւղերու հայ ժողովրդեան պէս, սկսեցին կամաց-կամաց գաղթել շրջակայ գաւառները, ոմանք դէպի Կովկաս և աւելի հեռու վայրեր։ Այդպէս ևս, երթալով տեղի հայ տների թիւը պակասեց, որոնցից ներկայ փախուստից առաջ մնացած էր 31 տուն՝ ընդդէմ 150 տնէ բաղկացած քիւրդերի։ Վերջիններս բացարձակ տէր ու տիրական հանդիսացած էին նախապէս գաղթած հայերի տուն ու տեղին, արտ ու այգին։*

*Մոլլա-քենտը լինելով Ներքին Բուլանըղի հարուստ գիւղերէն մին՝ բնականօրէն տեղացի հայերը անմասն չպիտի մնային համատարած կոտորածին, որը տեղի ունեցած է հետևեալ կերպով՝ համաձայն նոյն գիւղացի Ղազար Մանուկեանի տուած ճշգրիտ տեղեկութեանց։*

*Լզայ սոսկալի ջարդէն յետոյ, հերթը հասած էր մեր գիւղացիներուն կոտորելու, պատմում է յիշեալ Ղազարը, շարունակ սրբելով աչքերէն գիլ-գիլ հոսող արցունքի կաթիլները. մեզ մօտիկ գտնուող Ալագեազ գիւղի քիւրդերը թուով 30 հոգի՝ գլուխ ունենալով համագիւղացի Կօթոյի և Սալմանի Խալոյին՝ եկան մեր գիւղը. հաւաքեցին գիւղի ամբողջ հայերը՝ կին ծեր և երեխայ՝ 318 հոգի, ինչպէս նաև բոլոր անասուններն ու տնային իրերը ու տարան իրենց հետ Ալագեազ, որպէսզի ազատեն մեզ կոտորածէն։ Սակայն երբ կոտորածի հրամանը պաշտօնապէս հաստատուելը իմացուեց հանուր քիւրդերի կողմէ, Ապրի գիւղացի բազմաթիւ անմեղ հայերու արիւնը լափող յայտնի մոլեռանդ Շեխ Սլէն և Մոլաքենտցի Շեխ Ֆաթուլլահն անմիջապէս բողոք-խնդրագրով ներկայացան բանակի հրամանատար Հաճի Համտի փաշային, խնդրելով, որ թոյլ տրուի իրենց Ալագեազում պատսպարուած Մոլլաքենտցիներին ջարդելու։ Փաշան հրամայեց հարկ եղածն ընելու։*

*Նոյն պահուն Ալագեազ ուղարկուեցան 15 ժանդարմ գլխաւորութեամբ Ֆէթուլլահ չաուշի (վարոզաւոր), որոնք տեղ հասնելուն պէս ահի ու սարսափի տակ բնքամ եղած Մոլլաքենտցիներին հանելով իրենց ապաստանավայրերէն, երկար չուաններով քով-քովի կապելով՝ «որպէս ոչխարս, որք ի սպանդ վարին» ա ացուածին պէս։ 318 հոգին ալ բերում են Լիզ, ու այնտեղ մէկ-մէկ գնդակահարելով սպանում։*

*Սպանուածներէն՝ հայ և թուրք հասարակութեանը իւր հարստութեամբ և տաճկագիտութեամբ յայտնի և իր ընկերների կողմէ միշտ սիրուած և յարգուած Կարապետ Համտոյեանը Շեխ Ֆէթուլլահի կողմէ անլուր տառապանքներ կրելով՝ կնքում է իւր մանկանացուն։*

*Յիշեալ գիւղէն ազատած են միայն 51 հոգի, բոլորն ալ ծեր, կին և երեխայ, որոնք ապաստանած են այստեղ և զանազան գիւղեր։*

*Մոլլաքենտը ջարդէ առաջ ունէր 318 բնակիչ, 367 եզ, գոմէշ, մատակ եւն, մեծ եղջիւրաւոր անասուններ. 369 գլուխ ոչխար. 19 ձի և էշ. 9253 կոտ հորուած ցորեն են հացահատիկներ. 1 եկեղեցի (փայտաշէն), 1 դպրոց, 1 ձիթահանք և 5 ջրաղաց։ Բացի այդ 4560 կոտ սերմ պարունակող ընդարձակ բերքի վարելահող. որոնք բնաջնջուած գիւղացիների պաշտօնապէս հաստատուած սեփականութիւնը լինելով՝ այժմ մնացել են խոպան անտէր ու անտիրական...*

*1 փետր. 1917, Համամլու*

*Գ. Մանասեան*

# Գեղարուեստ

## «ԱՐՑՈՒՆՔ.—ԲԱՐՁՈՒՆՔ» ԳՐՔԷՆ

### Միայն Ներիր...

*Եւ հոգուդ մէջ դեռ նորաբաց ու տհաս՝*
*ա՜խ, մեռցուցին երկինք մը ջինջ և անծիր...*
*բայց ոչ ոքի մի՛ նզովեր, հէգ տղաս,*
*մի ների՛ր, միայն ների՛ր և անցի՛ր։*

*Եղբայրներ են մարդ. բորենին և խժեր՝*
*թունոտ և հէգ, հողաշխարհին մէջ ցան-ցիր...*
*բնութիւնը մարդուն թշուառ է վիժեր,*
*գթա՛ մարդուն, միայն գթա՛ և անցի՛ր։*

*Մի՛ մօտենար... բայց բարև տո՛ւր, բարև ա՛ռ,*
*հեզ ժպիտով մարդուն խանձի՛ր և սանձի՛ր...*
*անխօս գնա՛ դէպ անապատ արևառ,*
*ճամբիդ վրայ ժպտի՛ր, ների՛ր և անցի՛ր...*

**ԱԶԱՏ-ՎՇՏՈՒՆԻ**

## ԾԱՂԻԿՆԵՐ

*Ծաղիկներ բերիր, ծաղիկներ ճերմակ, հեզ ու նրբագին,*
*Ծաղիկներ բերիր երբ որ մարել էր իմ սրտի բաղին...*
*Եւ կարծես զարկին սրտիս լարերին անհնչանքով կրկին,*
*Ժպտեց մէկէն, և ինձ զգացի վայելքի գրկին։*

*Ծաղիկներ բերիր իմ պատուհանում դրիր դու գաղտուկ.*
*Տենչացիր ցրել տանջանքը սրտիս և հոգուս տաղտուկ,*
*Բայց թառամեցին ծաղիկները քո, թօշնեցին նուաղ,*
*Միայն մի անգամ հոգուս ժպտեցին և անցան, աւա՜ղ...*

*Աստղիկ Ոսկերչեան*

## ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ

*Փետրուարի 5-ին բացուեց հայ արուեստագէտների անդրանիկ ցուցահանդէսը։ Մօտ կիսամեայ իւր գոյութեան ընթացքում այս նորակազմ ընկերութիւնը համարեա հասարակական ոչ մի գործ չըկատարեց, եթէ հաշուի չառնենք մայիսին կազմակերպած անյաջող մի դասախօսութիւնը գեղարուեստի պատմութիւնից։*

*Այս ամսին վերջապէս հրապարակի վրայ է դնում Ընկերութիւնը իւր անդրանիկ գործը—ցուցահանդէսը։*

*Ներկայ պայմաններում անկարելի էր ենթադրել, թէ մի ցուցահանդէս կարող էր այսքան յաջող կազմակերպել, թէ նկարների և մասնակցող նկարիչների քանակի և թէ նկարների որակի տեսակէտից.*

*Մինչև այժմ ո՞վ կարող էր ենթադրել, որ եթէ հայ նկարիչները համախմբուեն, կարող են բառիս բուն նշանակութեամբ գեղարուեստական բարձր վայելքի բաւարար մի ցուցահանդէս*

գլուխ բերել։ Բայց ահա իրականութիւնը մեր առաջ է. այս ցուցահանդէսը տպաւորութեան և ապրումի մի նոր աշխարհ է. գեղարուեստի այս ճիւղերում մեր մէջ գործողները այնքան քիչ չեն եղել, ինչպէս ենթադրուել է մինչև այժմ։

Այս ցուցահանդէսում դրուած նկարներից շատ-շատերը կարող են պատուաւոր տեղ բռնել եւրոպական ամեն մի նոյն տեսակ ցուցահանդէսի մէջ։

Այդ պատճառով էլ ամեն մի գեղարուեստասէր անհատը պէտք է շտապի տեսնել—հայ արուեստագէտների գործերը, քանի չի փակուել ցուցահանդէսը։

Միւս անգամ կըխօսենք մի քանի արուեստագէտների աչքի ընկնող գործերի մասին։

Գ. Էղ

---

# Գրականութիւն

## ՊԱՏԿԵՐՆԵՐ ԻՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԻՑ

Բ.

Առաջաւոր դիրքերի խրամատներից մէկում լուռ նստած էին մի խումբ սպաներ։

Ձմնաւ և ցուրտ էր գետնի տակ։

Դուրսն էլ սաստիկ քամի էր, որը ներս թափանցելով շարժում էր ճրագի աղօտ լոյսը։

Բոլորի դէմքերը մռայլ էին։ Այսօր տաք կռիւ են ունեցել։ Ընկերներից շատերն ընկան, շատերն էլ վիրաւորուեցին։

Հեռուից դեռ լսւում էին հատ-հատ տրաքոցներ և ամեն անգամ ցնցում պատճառում նստողներին,—արդեօք ում դիպաւ,, Սպաներից ոչ մէկի քունը չէր տանում, չընայած սաստիկ յոգնածութեան։ Իւրաքանչիւրը խորասուզուած էր մտածութեան մէջ և ակամայից մտքերը պտտւում էին իրանց մերձաւորների շուրջը։ Մէկը յիշում էր իւր սիրասուն զաւակներին, մի ուրիշը իւր ծերացած մօրը, մի երրորդը իւր երիտասարդ կնոջը և երեւակայութեան մէջ պատկերանում էին վերջին հրաժեշտի ծանր րոպէները...

«Արդեօք ի՞նչ են անում մեր սիրելիները այս րոպէիս. տանջւո՞ւմ են մեզ համար, զգո՞ւմ են թէ ինչ չարքաշ կեանք ենք վարում կռուի դաշտում։ Այսօր հրաշքով ազատուեցինք մահից, իսկ վաղը... ահա թէ ինչու քունը նրանց աչքերից փախել էր։

Դուրսը առողջապահները (սանիտարները) լապտերներով շրջում էին կռուի դաշտում և հաւաքելով վիրաւորներին տանում էին այն վրանը, որը ժամանակաւորապէս սարքուած էր խրամատներից ոչ հեռու, նախնական օգնութիւն հասցնելու համար։

Սրտաճմլիկ էր այնտեղ տեսարանը։ Ծոտի ներքնակների վրայ և մեծ մասամբ ուղղակի գետնին փռուած էին վիրաւորները գունատ դէմքերով, սարսափած և տանջուած հայեացքերով։ Շատերի կողքին արեան լճակներ էին կանգնած։ Գթութեան քոյրերը հազիւ էին հասնում կատարելու բժիշկների հրամանները։ Գործ շա՜տ, աշխատող սակաւ. ժամանակ չկար քնքշութիւնների։ Շտապով կապկպում էին վէրքերն առանց սովորական զգուշութիւնների։ Սաստիկ ցաւերից այնպիսի տնքոց էր բարձրացել վրանում, որ շատ հեռուից լսւում էր։

—Մի կաթիլ ջո՜ւր, ի սէր Աստուծոյ,—լսուեց վրանի խորքից։

Երիտասարդ քոյր Թերեզան, որն առանց հանգստանալու առաւօտից աշխատում էր վրանում, ցնցուեց և սկսեց աչքերով փնտռել, թէ որտեղից է գալիս այդ խուլ ձայնը։

—Աղրո՜ւմ եմ, մի կաթիլ ջո՜ւր, ի սէ՜ր Աստուծոյ...

Այս անգամ քոյր Թերեզան նկատեց և վազեց այն կողմը։

Արեան մէջ լողում էր մի երիտասարդ սպայ, փակ աչքերով և այնքա՜ն գունատ դէմքով, որ կարծես թէ արդէն մեռել էր։ Նրա ճղուած փորից դուրս էին թափուել աղիքները։

—Տէր Աստուած, այդ Սաշա Բ. է,—գոչեց քոյր Թերեզան, ամենից երիտասարդ, ամենից սիրուած սպան։ Սա դեռ առաւօտեան այնքան աշխոյժ, լի եռանդով ոգեւորուած դուրս եկաւ կռուելու, իսկ հիմա... քոյր Թերեզան հմուտ աչքերով դիտեց վէրքը և տեսաւ, որ ամեն բան վերջացել է։ Նա լցրեց բաժակը ջրով և մօտեցրեց վիրաւորուածի պապակւող շրթունքներին։

Սպայ Բ. բացեց աչքերը, ճանաչեց քոյր Թերեզային։

—Ա՜խ քոյրիկ, մի՞թէ ես պէտք է մեռնեմ, բայց ես ապրել եմ ուզում, ես դեռ չեմ վայելել կեանքը, փրկեցէք ինձ, քո՜յրիկ, ո՜հ, փրկեցէք... աղաչում էր նա դողդոջուն ձայնով. և արցունքները փայլեցին նրա հանգած աչքերում։

Շատ ծանր տեսարանների էր հանդիպել քոյր Թերեզան, բայց այս երիտասարդ սպայի դրութիւնը, որը բոլորովին երեխայի էր նմանում, այնքան յուզեց նրան, որ չկարողացաւ զսպել իրան և սկսեց հեկեկալ։ Սաշա Բ.-ի աչքերը սարսափից լայն բացուեցին։

—Դուք լալի՞ս էք, քո՜յրիկ. ուրեմն ոչ մի յոյս, ես պէտք է մեռնեմ, բայց ասացէք ինչո՞ւ համար... չէ՞ որ ես դեռ չեմ ապրել, իսկ իմ խեղճ մայրը, նա չի տանիլ այդ հարուածը... ես խոստացել եմ նրան վերադառնալ հերոս... ո՛չ, ո՛չ, ես չեմ ուզում մեռնել. կեանքը այնքան քաղցր է...

Նա մի շարժում արեց վեր կենալու, բայց ուժասպառ ճիչ արձակելով ետ ընկաւ և ուշաթափուեց։ Քոյր Թերեզան երկար աշխատեց նրան ուշքի բերելու, բայց ի զո՜ւր։ Թախծալի հայեացք ձգեց նա սառչող մարմնի վրայ և նրա միտքը թռաւ դէպի սպայի թշուառ մայրը, որը այնքա՜ն անհամբեր սպասում էր իւր զաւակին...

Եւ որքա՜ն մայրեր վշտահար, ինչքա՜ն յոյսեր խորտակուած։

Ինչո՞ւ ես պէտք է մեռնեմ, ես ապրել եմ ուզում, լսում էր նա շարունակ։

Այո՛, ինչո՞ւ համար այդքան զոհեր, յանուն ինչի՞...

—

—Թերեզա, այսօր մենք գնալու ենք երեկոյթ, որ տրւում է յօգուտ վիրաւոր զինուորների,—ասաց տիկին Նինան, Թերեզայի մօրաքոյրը, մտնելով նրա սենեակը։ Ես տոմսակ եմ վերցրել քեզ և ինձ համար։

—Թո՛ղ ինձ, մօրաքոյր. ես սիրտ չունեմ, վերադարձել եմ քաղաք մի քիչ հանգստանալու և մոռանալու թշուառութիւնները։

—Հենց այդ պատճառով էլ առաջարկում եմ քեզ գնալու։ Ես ուզում եմ որ մռայլ մտքերդ ցրուեն, չէ՞ որ երեկոյթը տրւում է յօգուտ այն վիրաւորների, որոնց դու նուիրել ես քո կեանքը։

Թերեզան վերջ ի վերջոյ համոզուեց և երեկոյեան մօրաքրոջ հետ ուղեւորուեց գլխաւոր փողոցը, որի մի մեծ տան առաջ արտասովոր կենդանութիւն էր տիրում։ Ամէն րոպէ կառքեր և ինքնաշարժներ (աւտոմոբիլներ) կանգ էին առնում, միջից թիթեռնիկների պէս դուրս էին թռչում շքեղ հագնուած տիկինները և օրիորդները և ներս մտնում իրանց առաջ լայն բացուող դռներով։

Փողոցում անցուդարձ անողները հետաքրքրութեամբ նայում էին այդ տեսարանին և գլխները վեր բարձրացնելով կարդում էին այն մեծ ցուցանակը, որ կախուած էր դռան ճակատին։

«Երեկոյթ հօգուտ վիրաւոր զինուորների։

Թերեզան անվստահ քայլերով մօտեցաւ դաշնը. տաղած դաշնակին հեգնական հայեացք գցեց համեստ հագնուած տիկիններից վրայ և կիսով չափ բացեց դուռը։ Ոչ ոք չվազեց նրանց վերնազգեստը հանելու։ Թերեզան օգնեց մօրաքրոջը և միասին բարձրացան վերև։ Դահլիճը շքեղ զարդարուած բոյսերով և թանգագին գորգերով առատ լուսաւորուած էր և ծայրէ ծայր լի ընտիր հասարակութեամբ։

Կանայք նոր տարազի զգեստներով, մերկատիտ սիլի-բիլի էին անում աջ ու ձախ. կարգադրիչները վազվզում էին դահլիճի մի ծայրից միւսը, մերթ ընդ մերթ սրբելով իրենց քրտնած ճակատները։

Ամենուրեք ուրախութիւն և կենդանութիւն էր տիրում։ Հնչեց երաժշտութիւնը, պտտուեցին զոյգերը․․.

Պտտուեց նաև Թերեզայի գլուխը։ Ի՞նչ հակապատկեր այն աշխարհի, որտեղից նա նոր էր եկել։ Նա չէր կարողանում հասկանալ, թէ ինչպէս են մարդիկ այստեղ ուրախանում, երբ այնտեղ այնքան թշուառութիւն է տիրում։ Եւ որքան կեղծիք այս մարդկանց մէջ։ Ուզում են զուարճանալ, ուրախանալ, Տէրը նրանց հետ, բայց ինչու են քողարկում իրանց տրամադրութիւնը կեղծ համակրութեամբ։ Մի քանի ռուբլի պէտք է տան—հազարներ են ծախսում իրանց հագուստների վրայ, իսկ նրանք այնտեղ շապիկ չունեն փոխելու, կեղտի և միջատների մէջ թաղուած։ Թերեզան վիրաւորւում էր ամենալաւ զգացմունքներով. նա այլևս չէր կարողանում տանել այդ տեսարանը։ Նրա սիրտը սկսեց ուժգին բաբախել. աչքերը մթնեցին։ Ամաչեցէք, ուզում էր ասել, ուզում էր գոռալ, դադարեցրէք այս անպատուաբեր խաղը, բայց ինչ-որ մի բան սեղմեց նրա կոկորդը և նրա բերանից դուրս թռան անհասկանալի բառեր և նա գլորուեց գետին...

Դահլիճի մէջ խլրտում ընկաւ։

Կարգադրիչները շրջապատեցին մօրաքրոջը, որը ջանում էր ուշքի բերելու Թերեզային։

—Ո՞վ է, ի՞նչ է, ի՞նչ է պատահել, լսուեց ամեն կողմից։

—Ոչինչ, գթութեան քոյր է, նոր է եկել գիւղերից. վարժուած չէ հասարակութեանը. երևի տօթն է ազդել նրա վրայ։

—Ի՞նչ գործ ունի այստեղ, վրայ բերեց բարեգործ տիկիններից մէկը, ի՞նչ նրա տեղն է, որ գալիս է և փչացնում մեր երեկոյթի տրամադրութիւնը։

Թերեզային տարան տուն, իսկ հասարակութիւնը շարունակեց ուրախանալ մինչև լոյս...

Ինիմենթօ

---

# Մատենախօսութիւն

«Հանրագիտական բառարան», հատոր առաջին, գինն է 5 ռուբլի. կազմեց Համբարձում Առաքելեան։

Վերջապէս տասներկու տարի սպասեցնելուց յետոյ լոյս տեսաւ այս բառարանը, որի ձեռնարկութիւնն սկսուած էր 1904 թուին։ Այժմ էլ ամբողջական գործը չէ, որ դրուած է հրապարակի վրայ, այլ կէսը միայն, ուրեմն դեռ պէտք է սպասենք թերևս մինչև 1930 թուականը, որպէսզի ունենանք երկու հատորից բաղկացած հայերէն հանրագիտակ բառարան։

Այդ դեռ հերիք չէ. հեղինակը յառաջաբանի մէջ յայտարարում է, որ հայ գրողների և գործիչների անունները բոլորովին չեն մտել առաջին հատորի մէջ. այլ նա մտադիր է երկրորդ հատորում զետեղել հայկական բաժինը։

Այդ բաժանումը մեր կարծիքով բոլորովին բռնազբօսիկ է և անգործնական։

Միւս կողմից՝ Հայաստանի աշխարհագրական անուններն արդէն զետեղուել են այս առաջին հատորում, ինչու։ Եթէ հայերէն զետեղուել են այս առաջին հատորում, ինչու։ Եթէ հայկական մասը պէտք առանձին լինի, էլ ինչու են աշխարհագրական անունները բաժանուել մեր հեղինակների և գործիչների անունններից և մտել օտարների բաժինը։ Մեր կարծիքով, շատ տարօրինակ է նաև այս կարգադրութիւնը, որ երևի հետևանք է այն հանգամանքի, որ պ. Համբարձում Առաքելեան չունենալով բաւականաչափ աղբիւրներ հայ հին և նոր գործիչների ու գրականագէտների մասին, ժամանակաւորապէս գոնէ յետաձգել է դժուարութիւնը։ Բայց բառարանը մեծապէս տուժել է այդ հանգամանքից։ Մեզանում յատկապէս հայկական լրիւ բաժին ունեցող հանրագիտակի բարիք կայ. օտար անունների համար օտար լեզուներով անթիւ բառաններ կան և շատ էժանագին ու յարմար։ Նոյն իսկ միայն հայերէն իմացող ընթերցողների մտաւոր պատրաստութեան բնոյթը աւելի հայկական անունների հետ է կապուած. կը նշանակէ մեզ համար կարևորագոյն էր հենց այն բաժինը, որ չէ լոյս տեսել դժբախտաբար։

Երկրորդ խոշոր պակասութիւնը ներկայ աշխատութեան մէջ այն է, որ զուրկ է համաչափութիւնից. օրինակ Ֆրանսուա Կոպպէի նման մի հասարակ հեղինակի նուիրուած է երկու անգամ աւելի տեղ, քան հենց Բայրընին կամ Մոլիէրին կամ Դոստոեվսկուն. կարելի է։

«Հայաստան» բառի հետ կապուած բոլոր բացատրութիւնն 170 սիւնակ են բռնում, այն ինչ Անգլիային տրուած է միայն մի սիւնակ. Յունաստանին էս այդչափ։ Որչափ էլ որ ազգասէր լինենք, յամենայն դէպս նման անհամաչափութիւններն անթոյլատրելի են որևէ հանրագիտակի մէջ, ինչպէս որ այդ պահանջում է բառարանի հենց նաև վերնագիրը։

Անհամաչափութիւն նկատում էք նաև պատկերների մէջ. իսկապէս ի՞նչ պատկերներ պէտք է զետեղել մի այսպիսի աշխատութեան մէջ։ Ըստ իս, միայն այնպիսիներ, որոնց ներկայութիւնը կօգնէ բացատրութեան։ Արդ, այս իմաստով անձերի դիմանկարները այնչափ էլ կարևոր չեն. այս պատճառով էլ բազմաթիւ են այն հանրագիտակները, որոնց մէջ գործիքների, բոյսերի, կենդանիների նկարներ կան միայն, առանց մարդկային պատկերների։ Այն ինչ ներկայ աշխատութեան մէջ ճիշտ դրա հակառակն է եղած. միայն անձնաւորութիւնների դիմանկարներն են նրա մէջ տեղ բռնել, և այն էլ շատ անճաշակ կերպով—մեծ, փոքր, նման, տարօրինակ, գլխաւոր, երկրորդական խառն ի խուռն, առանց որոշ ծրագրի։ Այդ բոլոր պատկերներն էլ կարող էին բոլորովին չը լինել, իսկ փոխարէնը գոնէ քարտէզներ լինէին. 170 սիւնակ է նուիրուում Հայաստանին, բայց միերկու սիւնակ տեղ պահանջող քարտէզ իսկ չկայ կողքին, որ բացատրութիւնները պարզաբանուէին։ Նոյնը կարող ենք ասել նաև բոյսերի, կենդանիների, գործիքների, ճարտարապետական հաստատութիւնների և այլ նման իրերի մասին, որոնց պատկերները կատարելապէս բացակայում են այս հանրագիտակի մէջ։

Առ հասարակ, հապճեպ, անխնամ, անծրագիր գործի տպաւորութիւն է թողնում ամբողջ հատորը. նրա մէջ գտնում էք «էլեկտրականութիւն», Մարս», «լուսին» բառերը, բայց չէք գտնում, օրինակի համար, «մոլորակ„, «թթուածին», «ածխածին„, «հեռագիր», «բոա» և այլ՟այսպիսի հարիւրաւոր անհրաժեշտ բառեր։

Ինչ վերաբերում է ոճին ու բնորոշումներին, դարձեալ միևնոյն անկարգութիւնը. կարդացէք օրինակի համար «Դեկարտ», «Կօրնէյլ», «էլեկտրականութիւն», «Բեօնրս», «Կանտ», "Բուալօ„ և այլն, ոչինչ չէք հասկանայ որոշակի։ «Բաբերդ»-ի մէջ ասուած է.»... յայտնի է այսօր էս իր գործած մետաքսէ եւ ոսկեթել գիղեցիկ գորգերով»։ Մենք չը գիտենք, թէ որտեղից է հեղինակը հանել այդ տեղեկութիւնը. իրականութիւնն այն է, որ

այդ քաղաքում և նոյնիսկ գաւառում այդպիսի արհեստ կամ արդիւնաբերութիւն բացարձակապէս գոյութիւն չունի. նոյնիսկ չերամի մասին գաղափար չունին։

Կամ թէ «Պօլ Աղան»-ին նուիրուած տողերն այսպէս են վերջանում. «Նա կը լինի մօտ 36 տարեկան». հարցնում ենք՝ Երբ. միշտ։ Աւելի պարզ չէ՞ր լինի, եթէ ուղղակի նշանակած լինէր ծննդեան թիւը, որ է 1862. ուրեմն նոյնիսկ այս բառարանի ձեռնարկութեան տարին Պօլ Աղանը ոչ թէ 36 տարեկան էր, այլ 42 տարեկան։

Իտալացի բանաստեղծ Կարդուչչին վաղուց մեռած է, բայց պ. Հ. Առաքելեանի հանրագիտակի մէջ դեռ ողջ է։ Այսպէս էլ ուրիշ անթիւ ու անհամար թերութիւններ. այնպէս որ կարող ենք ասել, որ ներկայ աշխատութիւնը կազմուած է շատ անփոյթ ու հապճեպ կերպով, չը նայած որ յառաջաբանի մէջ ասուած է, որ հեղինակը նրա վրայ աշխատել է ամբողջ տասը տարի։

Բառարանի առաջին երեսում յիշատակուա՛ծ է, որ նուիրուած է Դուրգէն Աւան-Իւզբաշեանի յիշատակին, իսկ վեցերորդ երեսում էլ ասուած է, որ «Զոհում եմ իմ ամուսին Եղիսաբեթ Առաքելեանին»։

Մ. Մատէնճեան

# Մ Ա Մ Ո Ւ Լ

## «ԳՈՐԾ» ԱՄՍԱԳԻՐԸ

Բ.

Հասարակական-գիտական բաժնի ամենահետաքրքրական յօդուածը Յակոբ Մանանդեանի «Ազգութեան գաղափարն» է։ Հեղինակը նախ պարզ և որոշակի սահմանում է «ազգ» և «ժողովուրդ», «ազգային», «ազգայնական» և «միջազգայնութիւն» գաղափարները։ Ապա նա ապացուցում է «ազգի» գլխաւոր յատկանիշները. ազգը նրա կարծիքով կէս-բնազդական և կէս-գիտակցական մի ինքնագոյ—sui generis օրգանական-կուլտուրական միութիւն է իւր ուրոյն «անհատականութեամբ»։ Ազգութիւնը մենք համարում ենք առանձնայատուկ կուլտուրական խմբակցութիւն, հիմնուած ընդհանուր ցեղական ծագման, ընդհանուր լեզուի և ընդհանուր անցեալի վրայ և նրանցով պայմանաւորուած»։ Միւս բոլոր ազդակները—«ընդհանուր կրօնը և ընդհանուր բնակավայրը թէև ունեն նշանակութիւն ազգութեան համար, բայց անհրաժեշտ յատկանիշներ չեն ազգութեան», ասում է պ. Մանանդեանը։ Անկախ որոշ առարկելի կէտերից՝ «Ազգութեան գաղափարը» մի լուրջ գիտական փորձ է—լուսաբանել «համաշխարհային պատմութեան ամենահրատապ» և ամենաբարդ խընդիրներից (պրոբլեմներից) մէկը։ Այս տեսութիւնը յառաջաբան է մի շարք յօդուածների, որոնց նպատակն է լինելու լուսաբանել մեր ազգի կուլտուր-պատմական էութիւնը։

Ե. Ֆրանգեանը «Է. Մախի փիլիսոփայութիւնը» յօդուածում տալիս է այդ բնագէտ-փիլիսոփայի աշխարհահայեացքի գլխաւոր սկզբունքները պարզ և ամփոփ կերպով։ Հեղինակը յաջողում է հիմա ժողովրդականացնել, մատչելի դարձնել ընդհանուր փիլիսոփայական տեսակէտներ ու գաղափարներ։

«Փորձութեան ժամին» ուշագրաւ յօդուածում Դ. Անանունը աշխատում է երևան հանել մեր ժողովրդի գլխին եկած փորձանքի պատճառը և մի ընդհանուր ազգային հաւաքական կազմակերպութեան կարիքն է առաջարկում հայրենիքի «նուաճման» և «վերաշինութեան» համար։

*) Տես «Համբաւաբեր» № 5

«Ինքնաուսումնասիրութիւն և ինքնաճանաչութիւն» վերնագրի տակ Բ. Իշխանեանը մեր ժողովրդի տնտեսական կեանքի լուրջ, գիտական, վիճակագրական ուսումնասիրութեան կարիքն է շեշտում։

Ա. Ջիլինգարեանը իւր «Հայութեան մեծ տագնապը» յօդուածով գալիս է լրացնելու Անանունի «Փորձութեան ժամին»-ը։ Սա էլ մեծ զգուշութեամբ աշխատում է «փորձութեան» գլխաւոր պատճառները, «ներքին խմատն ու յաջորդական կապը» քննել։ Առարկայօրէն ճիշտ մատնանշելով փորձութեան և փորձանքի գլխաւոր պատճառները, Ջիլինգարեանը շեշտում է նոյն պէս, որ 1) Հ. Յ. Դ.-թիւնը «մինչ այդ մի վատ սովորութիւն էր իւրացրել» արտաքին աշխարհի առաջ «հանդէս գալ որպէս մի ազգային ներկայացուցչութիւն» և ոչ թէ այլ խմբակցութիւնների հետ հաւասարաբար. 2) Կամաւորական շարժումը ռէալ (իրօք, Վ. Խ.) արտայայտութիւնն էր հայ ժողովրդի քաղաքական վառ տենչանքների, բայց շնորհիւ իւր կազմակերպման յոռի ձևի ու ղեկավարութեան «չօշափելի վնաս հասցրեց» նաև «հայ ժողովրդի արտաքին յարաբերութիւններին»։ 3) Ապիկար գտնուեց և «Ազգային բիւրօն» իբրև ոչ ամբողջ ժողովրդի կողմից «ընտրուած և լիազօրուած մի օրգան»։ 4) Եւ վերջապէս «դալով մեր ազգային քաղաքականութեան ծնւին, գործելակերպին եւ նրա վարիչներին պէտք է ասել դժբախտաբար, որ եղած քննադատութիւնների թերևս մեծագոյն մասը արդարացի և հիմնաւոր է...»։ Այս շատ ուշագրաւ խոստովանութիւններ են և անաչառ ինքնաքննադատութեան ու քաղաքացիական առաքինութեան տեսակէտից արժէքաւոր։ Ուր այսպիսի անկեղծութիւն և ուղղամտութիւն կայ՝ այնտեղ կարելի է ճշմարտութիւն գտնել և փաստօրէն «վերագնահատում» կատարել։ Երկու յօդուածներն էլ—որքան էլ տարբեր տեսակէտներից—մի բան ակներև են կացուցանում, այն է, որ մենք անկարող եղանք հաւաքական և համերաշխ կերպով մեր ժողովրդի կամքը արտայայտել—«ազգային քաղաքականութիւն» վարել և թերևս մասամբ ազատուել «փորձութիւնից» ու «տագնապից» և հեռացնել այս վերջին դառնութեան բաժակը։

Բացի այդ ամսագրում կան հետևեալ յօդուածները, որոնք նոյնպէս զուրկ չեն որոշ հետաքրքրութիւնից.—«Յուշեր իմ անցեալից» Անկախի, «Պետրոս Շանշեան» Ե. ա. ք. Գեղամեանի, «Վարկային կօօպերացիայի գործունէութիւնը» Յ. Լազարեանի, «Վրաց կեանքից» Ար. Մեհրաբեանի, «Ներքին տեսութիւն», «Մահացեալներ» և դրախօսական «Շանթի Կայսրի» և Բ. Իշխանեանի «Народности Кавказа»-ի մասին։

«Գործը» ոչ այնքան տալիս է, որքան խոստանում։ Տեսնենք։

Վ. Խորէնի

## ՍՏԱՑՈՒԱԾ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

Ստացանք Հ. Առաքելեանի կազմած «Հանրամատչելի հանրագիտական բառարան„, էջ 2279 գինն է 5 ռուբլի. շատերին, մանաւանդ օտար լեզուներ չիմացողներին համար օգտակար ձեռնարկ է լինելու այս գիրքը։

«Ազգագրական հանդէս»-ի 26-րդ. գիրքը, որ համարեա ամբողջապէս. ինչպէս առհասարակ, խմբագրի՝ Ե. Լալայեանի, յօդուածներով է լցուած։

«Տարազ„ ամսագրի № 12-ը, նուիրուած հանգուցեալ Ս. Թառայեանի և Ա. Եզնեկեանի յիշատակին։

Ստացանք Լէօի «Վարդանանք» պատմական դրամա, 3 գործողութեամբ, էջ 208, գինը՝ 1 ռ. 20 կ.։

*Կ. Կարատկովի* Семирамида *(Շամիրամ) քերթուածը (պօէմա) գինը 1 ռ., Մոսկուա։*

*«Թատրոն և Երաժշտութիւն» թատերական, երաժշտական, գեղարուեստական հանդէս, ճոխ բովանդակութեամբ։*

*Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ*
*Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ*

# Յայտարարութիւններ

*Լոյս տեսաւ և վաճառւում է Թիֆլիսի գրավաճառանոցներում*

**ԼԷՕ**

## ՎԱՐԴԱՆԱՆՔ

*Պատմական դրամա, հինգերորդ դարի շարժումներից, 3 գործողութեամբ։*

*ԳԻՆԸ 1 ռ. 20 կ.*

---

Շուտով լոյս կը տեսնի

## ԱՐՇԱԼՈՅՍ

ԳՐԱԿԱՆ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ ալմանախի առաջին գրքոյկը

*Տարեկան լոյս է տեսնելու վեց գրքոյկ*

*Հրատարակուելու է երիտասարդ գրողների մասնակցութեամբ։ Թերթի հրատարակութիւնը բոլորովին ապահովուած է։*

*Առաջին գրքոյկի համար նիւթեր ուղարկել մինչև յունուարի վերջը հետևեալ հասցէով,* Тифлисъ, Черкезовская ул. № 93, Ашоту Мелкумянцу. 2—2

---

ԲԱՑՈՒԱԾ Է՝ ԲԱՑՈՒԱԾ Է՝

## „ԲԱՆ“

Փիլիսոփայութեան եւ գիտութեան կիսամեայ հանդէսի բաժանորդագրութիւնը

*Առաջին համարը լոյս կը տեսնի մայիսին, երկրորդը՝ դեկտեմբերին։*

*Տարեկան բաժնեգինն է 3 ռ., արտասահման 4 ռուբ.*

*Խմբագիր՝ Վահան Տէր-Գէորգեան*

*Հրատարակիչ՝ Պերճ Գայֆէճեան*

*Հասցէ.* Тифлисъ, Вагану Теръ-Геворкяну, Красногорск. № 5, кв. 14

---

## Գաղթականական ցուցահանդէսի հայկական բաժնի յանձնաժողովը

*ընդունում է Պետրոգրադում ցուցադրելու համար հայ գաղթականների պատրաստած կամ նրանց նիստ ու կացին վերաբերեալ զանազան իրեր, այսինքն կահ-կարասիք, զգեստներ, զարդեր, գործուածքներ, հիւսուածքներ, ասեղնագործներ, նկարներ, ձեռարուեստի արտադրութիւններ ու գործիքներ, երաժշտական գործիքներ, հին տեղական սառը զէնքեր ևն։*

*Գրասենեակը (Պետրոս Մեծի փողոց, տ. Աւան-Իւզբաշեանի № 6 բակում,* улица Петра Великаго, д. Аван-Юзбаша № 6) *բաց ամեն օր, բացի կիրակի և տօն օրերից, ցերեկուայ 12—2 ժամը։ Այստեղ պէտք է դիմեն նրանք, որոնք կամենում են ցուցահանդէսի համար իրեր առաջարկել կամ Յանձնաժողովի հետ բանակցել։*

2—1

---

**„ՆԻՒՐ ՄԱՆՈՒԿՆԵՐԻՆ“** ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

ԲԱՑՈՒԱԾ Է 1916-17թ. Ուսումն. ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ (1916 դեկտեմբերից մինչեւ 1917 մայիսը)

# ՀԱՍԿԵՐ

*(ՏԱՍՆԵՒՄԷԿԵՐՈՐԴ ՏԱՐԻ)*

## մանկական պատկերազարդ ամսագիր

մշտական աշխատակցութեամբ *ՅՈՎՀ. ԹՈՒՄԱՆԵԱՆԻ և ԱԹ. ԽՆԿՈՅԵԱՆԻ*

*Լոյս է տեսնելու ՎԵՑ համար և ՎԵՑ յաւելուած։* **ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐԸ** *լինելու են՝ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ՀԵՔԻԱԹ, ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ՊԱՏՄՈՒԱԾՔ, ԲՆԱԳԻՏԱԿԱՆ ԶՐՈՅՑ, ՄԱՆԿԱԿԱՆ ՎԷՊԻԿՆԵՐ, ՄԱՆԿԱԿԱՆ ՊԻԷՍ։*

Բաժնեգինն է ճանապարհածախսով
(Յաւելուածներով)

| | |
|---|---|
| *Վեց համարի* 8 *ռ.* | *Պարսկաստանում*—3 *ռ.* |
| *Ռուսաստանում* 3 *ռ.* | *Արտասահմանում*—8 *ֆր.* |

*1906 թ. յունուարից մինչև 1915 վերջը 27 ռ. իսկ առանց յաւելուածների 18 ռ. 50 կ.*

Ապառիկ բաժանորդագրութիւն չի ընդունւում

*Խմբագիր* Ստ. Լիսիցեան

*Խմբագրութեան հասցէն՝ Թիֆլիս, Սերգէյեան փողոց, 20.* Тифлисъ Редакція журнала Аскеръ. Tiflis (Caucase) Rédaction du journ. «Hasker».

*Թիֆլիսում* կարելի է գրուել *«Գիր» և «Գուտենբերգ» գրախանութներում, Բագւում՝ Բ. Հ. Կուլտուրական Միութեան գրասենեակում, և կայսրութեան այլ տեղերում,*

*ԲՈԼՈՐ ՓՈՍՏԱՏՆԵՐՈՒՄ*

*Թեհրանում պ. Ա. Գարագաշի մօտ* 1—3

*Տպարան Ն. Աղանեանի* Типографія Н. Аганьянцъ, Полицейская 7. Дозволено воен. ценз.